# ՀԱՅԱՍՏԱՆԻ ՃԱՐՏԱՐԱՊԵՏԱԿԱՆ ՀՈՒՇԱՐՁԱՆՆԵՐԻ ՄԱՍԻՆ ՏՎՅԱԼՆԵՐԸ ՀՈՎՀԱՆՆԵՍ ԴՐԱՍԽԱՆԱԿԵՐՏՑՈՒ ՊԱՏՄՈՒԹՅԱՆ ՄԵՋ

Գ. Բ. ՄԱՔՍՈՒԴՅԱՆ (ԱՄՆ)

*X դարի հայ պատմիչ Հովհաննես կաթողիկոս Դրասխանակերտցու (898/899—925 թթ.) «Հայոց պատմությունը»[1] արժեքավոր տեղեկություններ է բովանդակում վաղ միջնադարյան և Բագրատունյաց շրջանի հուշարձանների վերաբերյալ։ Աշխատությունն ընթերցողին տվյալներ է հաղորդում շուրջ երեսունհինգ հուշարձանների հիմնադրման, կառուցման, նորոգման, վերականգնման և կործանման մասին[2]։ Հոդվածում կփորձենք քննության առնել հեղի-*

---

1 *Պատմութիւն Յովհաննու կաթողիկոսի. Երուսաղեմ, 1867։*

2 *Ստորև բերվում է Դրասխանակերտցու «Պատմության» մեջ հիշված հուշարձանների մի ցանկ.*

*1) Դվին—Վարդան Մամիկոնյանի կառուցած կաթողիկե եկեղեցին, էջ 77։*

*2) Դվին—Հայրապետարանը, էջ 77։*

*3) Դվին—Սուրբ* Յիզտբուզիտի *վկայարանը, էջ 84։*

*4) Դվին—Սմբատ Բագրատունու կառուցած կաթողիկե եկեղեցին, էջ 91—92։*

*5) Ավան—եկեղեցին, էջ 93, 95։*

*6) Ավան—Հայրապետարանը, էջ 94։*

*7) Հռիփսիմե, էջ 96։*

*8) Էջմիածին—գմբեթի վերակառուցումը՝ Կոմիտաս կաթողիկոսի ձեռքով, էջ 96։*

*9) Քրիստափոր կաթողիկոսի հիմնած ճգնարանը՝* Ուղնւոց *գյուղի մոտ, էջ 97։*

*10) Գայանե, էջ 102։*

*11) Գայանե—Եզր կաթողիկոսի կառուցած կացարանը՝ քահանայական դասի համար, էջ 103։*

*12) Մրեն, էջ 104։*

*13) Դվին—Ներսես Գ կաթողիկոսի վերակառուցած՝ Սուրբ Սարգսի (Սերգիոս) վկայարանը, էջ 106։*

*14) Խորվիրապ—Ներսես Գ կաթողիկոսի կառուցած եկեղեցին, էջ 106։*

*15) Զվարթնոց, էջ 106—107, 112—113, 115։*

*16) Զվարթնոց—Ներսես Գ կաթողիկոսի կառուցած հայրապետարանը, էջ 112։*

*17) Արուճ—Գրիգոր Մամիկոնյանի կառուցած եկեղեցին, էջ 116։*

*18) Արուճ—Գրիգոր Մամիկոնյանի կառուցած պալատը, էջ 116։*

*19) Եղիվարդ—Գրիգոր Մամիկոնյանի կառուցած մենաստանը, էջ 116։*

*20) Եղիվարդ—Գրիգոր Մամիկոնյանի կառուցած եկեղեցին, էջ 116։*

*21) Ակոռի—Անաստաս կաթողիկոսի կառուցած եկեղեցին, էջ 116։*

*22) Դվին—Սուրբ Սուրհան-Դավթի գերեզմանը՝* Յիզտբուզիտի *վկայարանի մոտ, էջ 121։*

*23) Նախջուան—փայտյա կտուրով եկեղեցին, ուր արաբները հրո ճարակ դարձրին հայոց հեծելազորին, էջ 124—125։*

*24) Արամոնք—Դավիթ կաթողիկոսի կառուցած եկեղեցին, էջ 134։*

*25) Արամոնք—Դավիթ կաթողիկոսի կառուցած հայրապետարանը, էջ 134։*

*26) Բագուան—Սուրբ Գրիգորի մենաստանը. հուշարձանների մասին ոչ մի տեղեկություն չի բերված, էջ 138։*

*27) Մաքենոցաց վանք—հուշարձանների մասին ոչ մի տեղեկություն չի բերված, էջ 141, 161։*

*28) Այրից վանք (Գեղարդ)—հուշարձանների մասին ոչ մի տեղեկություն չի բերված, էջ 148, 419։*

նակի հաղորդած տեղեկությունների վավերականությունն ու արժեքը և բացատրել, թե ինչն է եղել ճարտարապետական այդ հուշարձանների հանդեպ Հովհաննես Դրասխանակերտցու ցուցաբերած հետաքրքրության շարժառիթը։

«Պատմության» մեջ Հովհաննես Դրասխանակերտցին խոսում է իր կենդանության օրոք կառուցված շենքերի[3] ու պատմական շինությունների մասին[4], նաև պատմական այնպիսի կառույցների, որոնց այդ ժամանակվա (X դար) վիճակը իրեն հայտնի է, ու տալիս է դրանց նկարագրությունը[5]։ Պատմողական բնույթի այդ երկի ընդհանուր շարադրանքում պատմական հուշարձանների հիմնադրումն ու կառուցումը ներկայացված են որպես կարևոր իրադարձություններ և հիշատակության արժանի ձեռնարկումներ։ Նույն ձևով են քննված նաև իր՝ Հովհաննես կաթողիկոսի[6], Սմբատ Ա թագավորի[7] և Աշոտ Բագրատունի Սպարապետի[8] կառուցած հուշարձանները։ Այսուհանդերձ, իրեն ժամանակակից զանազան իշխանների կառուցած եկեղեցիներին հեղինակն անդրադարձել է հպանցիկ ձևով[9] կամ առհասարակ չի հիշատակել[10]։

Հովհաննես Դրասխանակերտցու այն տեղեկությունները, որոնք վերաբերում են իր օրոք կառուցված հուշարձաններին, պետք է համարել վավերական ու արժանահավատ։ Լինելով բարձրաստիճան հոգևորական, որն զբաղեցնում էր Հայաստանի հայրապետական աթոռը և գրում իրեն ժամանակակից հոգևոր ու աշխարհիկ մեծավորների համար, նա, անշուշտ, չէր համարձակվի հնարովի կամ կեղծ ձևով ներկայացնել փաստերը։ IX դարի վերջի և X դարի սկզբի Հայաստանի հոգևոր կյանքի մասին նա, շնորհիվ իր գրաված դիրքի, տեղեկու-

---

29) Դվին—կաթողիկե եկեղեցու մոտ գտնվող գերեզմանատունը, էջ 146, 304։

30) Երազգավորք—Սմբատ Ա թագավորի կառուցած եկեղեցին, էջ 231։

31) Բագարան—Աշոտ Բագրատունու կառուցած եկեղեցին, էջ 245։

32) Կողբ—Աշոտ Բագրատունու կառուցած եկեղեցին, էջ 245։

33) Սուրբ Շիմանի սրբարանը-կառուցել է Գեղարքունիքի Գրիգոր Սուփան II իշխանը. էջ 283։

34) Շաղաքայ վանք—կառուցել է Սմբատ Ա թագավորի քույր և Գեղարքունիքի իշխանուհի Մարիամը, էջ 269։

35) Մանեայ Այրք—Հովհաննես Դրասխանակերտցի կաթողիկոսի կառուցած եկեղեցին, էջ 359։

36) Նորատուս—Գեղարքունիքի Սահակ իշխանի կառուցած եկեղեցին, էջ 376։

37) Բյուրական—Հովհաննես Դրասխանակերտցու կաթողիկոսի կառուցած ամրոցը, էջ 421։

38) Բյուրական—Հովհաննես Դրասխանակերտցու կառուցած եկեղեցին, էջ 421։

39) Սևանի վանքը—հուշարձանների մասին ոչ մի տեղեկություն չի բերված, էջ 419—420։

40) Դվին—862 և 893 թթ. երկրաշարժերի պատճառած ավերածությունը, էջ 169—170, 204—209։

[3] Տե՛ս № 2 ծանոթագրության 30—38 թվահամարներով ներկայացված հուշարձանները։

[4] Տե՛ս № 2 ծանոթագրության 1—29 թվահամարներով ներկայացված հուշարձանները։

[5] Այս կարգի հուշարձանների թվում կարելի է հիշատակել այնպիսիները, որոնց կառուցման և որմնագրային աշխատանքի մասին առանձին խոսվում է «Պատմության» մեջ։ Դրանցից են, օրինակ, Դվինի կաթողիկե եկեղեցին, Հռիփսիմեի տաճարը, Էջմիածնի կաթողիկե եկեղեցու գմբեթը, Գայանեի տաճարը, Զվարթնոցը, Զվարթնոցի հայրապետարանը, Գրիգոր Մամիկոնյանի պալատը Արուճում, Արամոնքի եկեղեցին։

[6] Մանեայ Այրքի և Բյուրականի եկեղեցիները։

[7] Երազգավորքի եկեղեցին։

[8] Բագարանի և Կողբի եկեղեցիները։

[9] Սուրբ Շիմանի, Շաղաքայ վանքի և Նորատուսի եկեղեցիները։

[10] Հովհաննես Դրասխանակերտցի, էջ 251. Հեղինակն անդրադառնում է հայ ավատատերերի շինարարական գործունեությանը և ընդգծում Գեղարքունիքի իշխանների կատարածը, բայց ոչ մի հուշարձան չի հիշատակում։ Նախընթաց մի հատվածում (էջ 173—174) նա ասում է, որ Գրիգոր Սուփան իշխանը կառուցել ու վերանորոգել է շատ եկեղեցիներ, սակայն զլանում է նշել դրանցից որևէ մեկը։

*լիյուն է քաղել ուղղակի սկզբնաղբյուրից, իսկ անցյալի դեպքերի ու պատմական հուշարձանների համար օգտագործել է այնպիսի աղբյուրներ, որոնք իրեն վստահություն են ներշնչել։ Օրինակ, իր գրքում նա ընդգրկել է VI—VII դդ. ճարտարապետական հուշարձանների մասին VII դարի պատմիչ Սեբեոսի «Պատմության» մեջ պահպանված տեղեկությունների մեծ մասը[11]։ VI—VIII դդ. ավելի քան տասնհինգ հուշարձանների վերաբերող[12] և Սեբեոսի գրքում բացակայող տվյալները նա, հավանաբար, քաղել է վարքագրական երկերից ու արխիվային նյութերից, ինչպիսիք են, օրինակ, Դվինի հայրապետարանի գրադարանում պահպանված կաթողիկոսաց ցանկերը։ Ապացուցված է, որ VII դարում գոյություն են ունեցել կաթողիկոսաց ցանկեր, ուր գրանցվել են հայ կաթողիկոսների որոշ՝ էական կարևորություն ներկայացնող գործերը[13]. ընդուսում, այսպիսի աղբյուրների նկատմամբ Հովհաննես Դրասխանակերտցու*

---

[11] Ստորև բերված հուշարձանների մասին տեղեկությունները ամբողջովին կամ մասամբ քաղված են Սեբեոսից.

1) Դվինի կաթողիկե եկեղեցու վերակառուցումը VII դարի սկզբին՝ Սմբատ Բագրատունու ձեռքով (Պատմութիւն Սեբէոսի, հրատ.՝ Գ. Վ. Աբգարյան. Երևան, 1979, էջ 100։ Համա. Հ ո վ հ ա նն ե ս  Դ ր ա ս խ ա ն ա կ ե ր տ ց ի, էջ 91—92)։

2) Ավան—ակնարկ այն մասին, թե Հովհան կաթողիկոսը թաղված է իր կառուցած եկեղեցու մոտ (Ս ե բ ե ո ս, էջ 112։ Հ ո վ հ ա ն ն ե ս  Դ ր ա ս խ ա ն ա կ ե ր տ ց ի, էջ 95)։

3) Հռիփսիմե—(Ս ե բ ե ո ս, էջ 121։ Հ ո վ հ ա ն ն ե ս  Դ ր ա ս խ ա ն ա կ ե ր տ ց ի, էջ 96)։

4) Էջմիածին—նույն տեղում։ Տե՛ս սույն հոդվածի՝ այդ երկու աղբյուրների անհամապատասխանությանը վերաբերող հատվածը։

5) Զվարթնոց—Հովհաննես Դրասխանակերտցին ունի լրացուցիչ տեղեկություն, որը Սեբեոսը չունի (համա. Սեբեոս, էջ 147, 175։ Հ ո վ հ ա ն ն ե ս  Դ ր ա ս խ ա ն ա կ ե ր տ ց ի, էջ 106—107, 112—113, 115)։

[12] Ստորև բերված հուշարձանների մասին տեղեկությունները քաղված են անծանոթ աղբյուրներից.

1) Ցիցռնուզիտի վկայարանը, որը կառուցել է Ներսես Գ կաթողիկոսը (548—557 թթ.)։

2) Ավանի հայրապետարանը, որը կառուցել է Հովհան կաթողիկոսը։

3) Ոսկեաց գյուղի ճգնարանը, որը կառուցել է Քրիստափոր կաթողիկոսը (628—630 թթ.)։

4) Սուրբ Գայանեի տաճարը, որը կառուցել է Եզր կաթողիկոսը (630—641 թթ.)։

5) Բահանայական դասի համար Եզր կաթողիկոսի կառուցած կացարանը՝ Գայանեի տաճարի մոտ։

6) Մրենի եկեղեցին, որը կառուցել է Դավիթ Սահառունին (Ա. Ա. Մ ա ն ու չ ա ր յ ա ն. Քննություն Հայաստանի IV—XI դարերի շինարարական վկայագրերի. Երևան, 1977, էջ 67. Հեղինակը ճիշտ չէ, երբ ենթադրում է, թե սույն տեղեկությունը Սեբեոսից է)։

7) Ներսես Գ կաթողիկոսի կառուցած Սուրբ Սարգսի (Սերգիոս) վկայարանը Դվինում (641—661 թթ.)։

8) Խորվիրապի եկեղեցին, որը կառուցել է Ներսես Գ կաթողիկոսը։

9) Ներսես Գ կաթողիկոսի կառուցած հայրապետարանը Զվարթնոցում։

10) Արուճի եկեղեցին, որը կառուցել է Գրիգոր Մամիկոնյան իշխանը։

11) Գրիգոր Մամիկոնյանի պալատը։

12) Եղվարդի եկեղեցին, որը կառուցել է Գրիգոր Մամիկոնյանը։

13) Եղվարդի մենաստանը, որը հիմնել է Գրիգոր Մամիկոնյանը։

14) Ակոռիի եկեղեցին, որը կառուցել է Անաստաս կաթողիկոսը (661—667 թթ.)։

15) Սուրբ Սուրհան-Դավթի գերեզմանը Դվինում՝ կառուցված սուրբ Ցիցռնուզիտի վկայարանի մոտ։

16) Արամոնքի եկեղեցին, որը կառուցել է Դավիթ Ա կաթողիկոսը (728—741 թթ.)։

17) Արամոնքի հայրապետարանը, որը կառուցել է Դավիթ Ա կաթողիկոսը։

[13] Համա. Նշանագիր կարգաց բանից եղելոց երիցու (Գ. Հ ո վ ս ե փ յ ա ն. Յիշատակարանք ձեռագրաց. հ. Ա, Անթիլիաս, 1951, էջ 19—25, G. Garitte. La Narratio de rebus Armeniae. Louvain, 1952.

ցուցաբերած հետաքրքրությունը ակներև է նախընթաց շրջանի նմանատիպ ցանկերի իր իսկ կատարած համառոտագրումից[14]։

Հովհաննես Դրասխանակերտցու «Պատմության» մեջ առավել վաղ շրջանի հուշարձանների մասին բերված տեղեկությունների արժեքավոր լինելը պայմանավորված է հեղինակի օգտագործած աղբյուրներով։ Նա խուսափում է ուղղակի մեջբերումներից, գերադասելով տվյալները ներկայացնել հարասությամբ։ Հաղորդվածը, այսպիսով, միանգամայն վստահելի է։ Օրինակ, Հռիփսիմեի տաճարի մասին հեղինակի պատմածը, որ անմիջականորեն վերցված է Սեբեոսի «Պատմությունից», բնագրի ճշգրիտ վերարտադրությունն է, միայն՝ համառոտված։ Այնուամենայնիվ, էջմիածնի կաթողիկե եկեղեցում Կոմիտաս կաթողիկոսի կատարած վերանորոգությունների նկարագրությունը տարբերվում է Սեբեոսի համապատասխան հատվածից։ Սեբեոսը պատմում է, որ եկեղեցու փայտե կտուրը փոխարինվել է քարե ծածկով, մինչդեռ Հովհաննես Դրասխանակերտցին խոսում է մասնավորապես գմբեթի մասին[15]։ Նշված հատվածի լեզուն վկայում է, որ Դրասխանակերտցու աղբյուրը Սեբեոսն է. Նկատվող անհամապատասխանությունը, հավանաբար, առաջացել է այն իրողությունից, որ Հովհաննես կաթողիկոսը մտովի պատկերացրել է եկեղեցու այդ ժամանակվա (X դար) վիճակը՝ քարե սալիկներից կառուցված մի գմբեթով։ Հովհաննես Դրասխանակերտցին իր սկզբնաղբյուրից շեղվում է նաև ուրիշ մասերում։ Այսպես, օրինակ, Ավանի ու Զվարթնոցի մասին նա տալիս է հավելյալ այնպիսի տեղեկություններ, որոնք Սեբեոսի «Պատմության» մեջ չկան։ Այն համոզմունքն է տիրում, որ Ներսես Գ կաթողիկոսը Զվարթնոցը կոչել է Գրիգոր Լուսավորչի անունով, որի նշխարներն ամփոփված են եղել եկեղեցու չորս մույթերի տակ։ Դրասխանակերտցին նշում է, որ Գրիգորի գլուխն էլ պահվում էր մի մասնատուփի մեջ։ Այսպիսի տվյալներն, անկասկած, քաջ հայտնի պիտի լինեին Լուսավորչի գահի ժառանգին ու որպես հավելում գումարվեին եկեղեցու մասին Սեբեոսի պատմածին։

Հայտնի չէ, թե Հովհաննես Դրասխանակերտցին, VI, VII և VIII դդ. հուշարձանների համար Սեբեոսից բացի ի՞նչ աղբյուր կամ աղբյուրներ է օգտագործել։ Այնուամենայնիվ, դրանք վստահելի են թվում։ Այն տեղեկությունը, թե Արուճի եկեղեցին կառուցել է Գրիգոր Մամիկոնյան իշխանը, կա նաև Ղևոնդի «Պատմության» մեջ[16], բայց Դրասխանակերտցին նրա գործին ծանոթ չէր։ Այս երկու պատմիչների վկայությունը վավերացվում է շինության վրա պահպանված արձանագրությամբ[17]։

Արդի գիտնականները հարց են հարուցել «Պատմության» մեջ հիշատակված երկու հուշարձանների կապակցությամբ։ Դրանցից մեկը Արամոնքի (Արամուս) եկեղեցին է, որը, Հովհաննես Դրասխանակերտցու ասելով, կառուցել է Դավիթ կաթողիկոսը (728—741 թթ.)։ Արդեն ապացուցված է, որ այս եկեղեցու ճարտարապետությունը իր վրա կրում է ավելի վաղ շրջանի կնիքը[18]։ Հնարավոր է, որ Դրասխանակերտցու ակնարկը վերաբերի առավել հին մի շինության վերակառուցմանը, քանի որ շինել բայը կարող էր օգտագործվել նաև այդ իմաստով։ Երկրորդ հուշարձանը Դվինի հռչակավոր կաթողիկեն է։ Հովհաննես Դրասխանակերտցին վկայում է, որ այն կառուցել է Վարդան Մա-

---

14 Շար հայրապետաց Հայոց (Սամուէլի քահանայի Անեցւոյ Հաւաքմունք ի գրոց պատմագրաց. Վաղարշապատ, 1893, էջ 272—277)։

15 Սեբեոս, էջ 121. «Վերացոյց և զփայտայարկս սրբոյ կաթուղիկէին. Նորոգեաց և զխախուտ որմոյն. շինեաց զքարայարկսն»։ Հովհաննես Դրասխանակերտցի, էջ 96. «...քակեալ սորա [Կոմիտասայ] զփայտայարկ գմբէթ սրբոյ կաթուղիկէին որ ի Վաղարշապատ քաղաքի, շինէ զնա գեղեցկայարմար և չքնաղատես կոփածոյ քարամբք»։

16 Պատմութիւն Ղեւոնդեայ մեծի վարդապետի Հայոց. Ս. Պետերբուրգ, 1887, էջ 15։

17 И. А. Орбели. Избранные труды. Ереван, 1963, с. 401—404.

18 Ա. Ա. Մանուչարյան. նշվ. աշխ., էջ 75—76 և էջ 76-ի № 87 ծանոթագրությունը, որը նկատի ունի՝ А. Б. Еремян. Храм Рипснмэ, с. 93—100.

միկոնյանը զրադաշտական մի բագինի վայրում, կոչելով Գրիգոր Լուսավորչի անունով, և հայրապետական Աթոռը տեղափոխել է Դվին։ Պատմիչ Թովմա Արծրունին, որը Հովհաննես Դրասխանակերտցու ժամանակակիցն է, միևնույն իրադարձությունները վերագրում է Արծրունի իշխաններ Տաճատին ու Վահրիճին[19]։ Երկու հեղինակներն էլ V դարի դեպքերին վերաբերող այս տեղեկությունները քաղել են «Համառոտութիւն» կոչված ոչ վավերական մի աշխատությունից[20], որը վերագրվել է V դարի հեղինակ Աբրահամ Խոստովանողին, բայց, հավանաբար, կազմվել է VI դարի վերջում կամ VII դարի սկզբում[21]։ Ենթադրվում է, որ այս կորած սկզբնաղբյուրը պատմում էր 571/572 թ. ապստամբության մանրամասների մասին և X դարի պատմիչները դրանք մասամբ շփոթել են V դարի դեպքերի հետ։ Հարցն այն է, թե այդ երկու տարբեր պառումներից ո՞րն է առավել արժանահավատը և ո՞վ է կառուցել եկեղեցին։ Ըստ Թովմա Արծրունու, Արծրունի իշխանները Դվինում զրադաշտական տաճարը քանդելուց հետո քարերն օգտագործել են եկեղեցին կառուցելու համար։ Հովհաննես Դրասխանակերտցին ասում է, սակայն, որ Վարդան Մամիկոնյանի կանգնեցրած եկեղեցին շինված էր աղյուսից ու փայտից՝ «յաղիւսոյ և ի փայտէ կազմեալ էր»: Ակներևաբար, այս տեղեկությունը նա քաղել է տարբեր մի աղբյուրից և հնարավոր է, որ այդ աղբյուրում կաթողիկե եկեղեցու մասին եղած լինի տեղական մի ավանդություն, որը Դրասխանակերտցու օրոք դեռևս պահպանված էր ու զրուցվում էր Դվինի հայրապետարանում։ Թվում է, թե հնագիտական վկայությունը, համենայն դեպս, առավել գերակշիռ արժեք է ներկայացնում, քան հետագայի պատմիչների հավաստումն այն մասին, թե ինչ ժամանակաշրջանի կառույցի մասին է խոսքը՝ V դարի կեսի, թե՞ VI դարի վերջի[22]։ Ըստ հնագետների, շինությունն ունի նախաքրիստոնեական ծագում։ IV դարի սկզբում այն վերածվել է կաթողիկե եկեղեցու, իսկ ավելի ուշ ավելացվել են գավիթներն ու ավանդատները։

Հովհաննես Դրասխանակերտցու ակնարկած հուշարձանների մեծագույն մասը, չնչին բացառությամբ, եկեղեցիներ, վանքեր ու հայրապետարաններ են։ Թեև նա հիշատակում է մի քանի ամրոցներ, բայց այդ հուշարձանների պատմության վերաբերյալ ոչ մի տեղեկություն չի տալիս։ Միակ բացառությունը Բյուրականի իր ամրոցն է, որի մասին անցողակի նշում է, թե ինքն է կառուցել։

Ընդհանուր առմամբ, Դվին քաղաքի ու նրա հուշարձանների նկատմամբ Հովհաննես Դրասխանակերտցին խիստ կողմնակալ մոտեցում ունի։ Նա պատմում է 862 և 893 թթ. մեծ երկրաշարժերի մասին և միաժամանակ անդրադառնում հայրապետարանին, կաթողիկե եկեղեցուն, վկայարաններին ու գերեզմանատանը[23]։ Դվինի հանդեպ նրա ունեցած հետաքրքրությունը հասկանալի է, քանի որ ինքը հարևան Դրասխանակերտ գյուղից էր ու երկար ժամանակ ապրել է Դվինում, սկզբում որպես եպիսկոպոս, իսկ հետո արդեն իբրև կաթողիկոս։

Իր «Պատմության» մեջ Հովհաննես Դրասխանակերտցին հատուկ ուշադրություն է նվիրում Հայաստանի կաթողիկոսների կառուցած հուշարձաններին։ Նա հիշատակում է այն բոլոր կաթողիկոսներին, որոնք եղել են մեծ շինարարներ, ինչպես, օրինակ, Ներսես Բ-ն, Հովհանը, Կոմիտասը, Քրիստափորը, Եզրը, Ներսես Գ-ն, Անաստասն ու Դավիթը և ընթերցողին հուշում նաև իր

---

19 Թովմայի վարդապետի Արծրունւոյ Պատմութիւն տանն Արծրունեաց. Ս. Պետերբուրգ, 1887, էջ 78—79։

20 Նույն տեղում, էջ 80, 76։

21 Ն և ր ս և ս Ա կ ի ն յ ա ն. Եղիշե վարդապետ և յուր Պատմութիւն Հայոց պատերազմի. Հ. Բ. Վիեննա, 1936, էջ 765—779։

22 Այս նյութին վերաբերող քննությունը տե՛ս Ա. Ա. Մ ա ն ո ւ չ ա ր յ ա ն. Նշվ. աշխ., էջ 30—34։

23 Տե՛ս № 2 ծանոթագրության ցանկը։

կատարածների մասին՝ Մանեայ Այրքում ու Բյուրականի իր սեփական ամրոցում[24]։ Կաթողիկոսների ձեռքով կառուցված հուշարձանների թիվը հասնում է տասնվեցի[25], իսկ դա կազմում է «Պատմության» մեջ հիշատակված եկեղեցիների ընդհանուր քանակի գրեթե կեսը[26]։ Այդպիսի կառույցների նկատմամբ Դրասխանակերտցու ցուցաբերած հետաքրքրությունը կարելի է բացատրել նրա ունեցած դիրքով, օգտագործած աղբյուրների բնույթով և «Պատմության» շարադրանքի ընդհանուր նպատակադրումով, ինչպես կտեսնենք ստորև։

Հովհաննես Դրասխանակերտցին հիշատակում է նաև հուշարձաններ, որոնք կառուցվել են Հայաստանի կենտրոնական իշխանությունը ներկայացնող կամ նրանց հետ սերտորեն առնչվող իշխանների ու թագավորների կողմից։ Մենք արդեն հանդիպեցինք Վարդան Մամիկոնյանի անվանը. դրան պետք գումարել Սմբատ Բագրատունու, Դավիթ Սահառունի Կուրապաղատի, Գրիգոր Սամիկոնյան իշխանի, Սմբատ Ա թագավորի և Աշոտ Բագրատունի Սպարապետի անունները։ Վերջինս, ավելի ուշ, սկսեց թագավորել Դվինում՝ հակադրվելով բուն թագավորին։ Այսպիսի անհատների կողմից կանգնեցված հուշարձանների թիվը հասնում է տասնմեկի։ Դրանց պիտի գումարել Սյունիքի երեք եկեղեցիները՝ Սուրբ Շիմաւնը, Շաղաֆայ վանքը և Նորատուսը, որոնք գրքում հիշատակված են սոսկ այն պատճառով, որ այնտեղ են թաղվել հիշյալ եկեղեցիները կառուցողները։ Իր «Պատմության» մեջ Հովհաննես Դրասխանակերտցին խոսում է նաև Գրիգոր Լուսավորչի վանքերի մասին, որոնք գտնվում են Բագաւան գյուղում, Սևանում, Մաքենոցքում և Այրիվանքում, ինչպես և մի քանի ուրիշների մասին, որոնց ճարտարապետական հուշարձանների վերաբերյալ, սակայն, տեղեկություններ չի հաղորդում։

Հովհաննես Դրասխանակերտցու «Պատմության» մեջ VI և VII դդ. հուշակավոր մի քանի հուշարձանների զանցառումը կարելի է բացատրել հեղինակի օգտագործած աղբյուրներում դրանց մասին անհրաժեշտ տեղեկության բացակայությամբ։ Այսուհանդերձ, եթե նկատի առնենք, թե ի՞նչ թիվ են կազմում իր ժամանակ հուշակ վայելող և «Պատմության» մեջ չհիշատակված հուշարձանները, ապա կտեսնենք, որ ընտրության հարցում Դրասխանակերտցին շատ խստապահանջ է եղել։ Նա իրեն ժամանակակից իշխանի կամ եպիսկոպոսի կառուցած ոչ մի հուշարձան չի հիշատակում. լավագույն դեպքում, ընդհանուր ակնարկով անդրադառնում է արդեն մեռած մի իշխանի բարի գործերին[27]։ Հակառակ Մաքենոցքի և Սևանի վանքերի հետ իր ունեցած անձնական կապերին[28], այդ կառույցները հիմնողների մասին նա ոչինչ չի ասում։ Հովհաննես Դրասխանակերտցին լռությամբ շրջանցում է նաև Տաթևի կաթողիկեն ու Խոտակերաց վանքի եկեղեցին, որոնք հիմնվել ու կառուցվել էին տեղի եպիսկոպոսի ու իշխանների ձեռքով, իսկ օծումը կատարել էր անձամբ ինքը՝ Հովհաննես կաթողիկոսը[29]։ Նա շատ կարճ՝ մեկ տողանոց ակնարկով անդրադառնում է Վասպուրականի Գագիկ թագավորի շինարարական գործունեությանը[30] և ոչինչ չի ասում Աղթամար կղզու Սուրբ Խաչ եկեղեցու մասին, չնա-

---

24 Ա. Ա. Մանուչարյան. նշվ. աշխ., էջ 180—181։

25 Նույն տեղում։

26 Լրիվ ցանկի համար տե՛ս № 2 ծանոթագրությունը։

27 Տե՛ս № 10 ծանոթագրությունը։

28 Հովհաննես Դրասխանակերտցին ասում է, որ ինքը եղել է իր նախորդի՝ Մաշտոց կաթողիկոսի աշակերտը (էջ 230)։ Հայտնի է, որ Մաշտոց կաթողիկոսը իր կրթությունն ստացել է Մաքենոցքում, իսկ այնուհետև, ավելի ուշ, եղել է Սևանում։ Այս կապակցությամբ տե՛ս Յաղագս վարուց երանելւոյ տեառն Մաշտոցի (Գ. Հովսեփյան. Յիշատակարանք..., էջ 87—96)։

29 Տե՛ս Ստեփաննոս Օրբելյան. Պատմութիւն նահանգին Սիսական, Թիֆլիս, 1910, էջ 226, 229, 230—234, 234—238-ում առկա փաստաթղթերը։ Նաև՝ Դիվան հայ վիմագրության, պրակ Գ, կազմեց Ս. Գ. Բարխուդարյան. Երևան, 1967, էջ 206—207-ի ներդիրը։ Ա. Ա. Մանուչարյան. նշվ. աշխ., էջ 135—137։

30 Հովհաննես Դրասխանակերտցի, էջ 406։

յած կյանքի վերջին մեկ կամ երկու տարին անց է կացրել Վասպուրականում, ուր և ավարտել է իր «Պատմությունը»։ Նման շրջանցումը դժվար է ըմբռնել, քանի որ մինչև Դրասխանակերտցու գալը՝ 923/924 թ.[31], եկեղեցին արդեն կառուցված էր և այդ ժամանակաշրջանում կաթողիկոսը լավ էր տրամադրված դեպի Գագիկ թագավորը[32]։

Հովհաննես Դրասխանակերտցու «Պատմության» մեջ ճարտարապետական հուշարձանների մասին բերված տեղեկությունների վերլուծությունը ցույց է տալիս, որ հեղինակը անձնական հետաքրքրություն է ունեցել այդ կառույցների նկատմամբ։ Որպես իր սեփական կալվածում գտնվող մատուռի հիմնադիր ու կառուցող, նա պետք է անմիջական շփում ունեցած լիներ ճարտարապետների ու որմնադիրների հետ։ Միջնադարյան մի կանոն, որը անհիմն ձևով վերագրվում է VIII դարի կաթողիկոս Հովհան Օձնեցուն, նշում է, որ նոր եկեղեցու հիմնարկեքի արարողությունը գլխավորող եպիսկոպոսը տնօրինում է նաև կառույցի տեղանքի չափումը, ինչպես և նախագիծը[33]։ Դրանով կարելի է բացատրել, թե ինչու Հովհաննես Դրասխանակերտցին իր գրքում ծալիս է տասնվեց հուշարձանների կառուցվածքի, որմնադրային աշխատանքի և արտաքին տեսքի ամփոփ նկարագիրը 34։ Անձնական հետաքրքրությունները հեղինակին իր հիմնական նպատակից չեն շեղում։ «Պատմության» մեջ հի-

---

31 Աղթամարի թվականի կապակցությամբ տե՛ս S. Der Nersessian. Aght'amar, Church of the Holy Cross. Harvard University Press, 1965, p. 5. Ա. Ա. Մանուչարյան. Նշվ. աշխ., էջ 236—238։

32 Հովհաննես Դրասխանակերտցին փոխել էր իր վերաբերմունքը Գագիկի նկատմամբ սկսած այն ժամանակվանից (913/914 թթ.), երբ վերջինս խզեց կապերը Ատրպատականի Սաջյան ոստիկան Յուսուֆի հետ (էջ 296)։

33 Յովհաննու Իմաստասիրի Աւձնեցւոյ Մատենագրութիւնք. Վենետիկ, 1953, էջ 141. «Եւ զկնի այսորիկ ընթեռնուլն եպիսկոպոսին զաղօթսն զըոլոր ուխտին առեալ զաղօթս նուիրէ առաջի Աստուծոյ. և ապա հրամայէ առնուլ զգործի բրելոյն, և զչափ որքանութեան շինուածոյն, և ծրագրէ զտեղին, ըստ տեսլեանն Եզեկիէլի վասն տաճարին, և սրբոյն Գրիգորի արուեստականութեան վկայարանացն սրբոց...»։

34 Ստորև բերված հատվածները նկարագրություններն են հետևյալ հուշարձանների։

1) Դվին—Վարդան Մամիկոնյանի կառուցած եկեղեցին «...յաղիւսոյ և ի փայտէ կազմեալ էր»։

2) Դվին—Սմբատ Բագրատունու կառուցած եկեղեցին «...կոփածոյ քարամբք, գեղեցկադիր շինուածիւ, կրով ձուլեալ ի մի»։

3) Ավան—կաթողիկե եկեղեցին «պայծառակերտ քաւարան»։

4) Հոփսիմե «...հրաշապէս և նազելի և պայծառ շինուածով յարդարէր»։

5) Էջմիածին—գմբեթը «...գեղեցկայարմար և չքնաղատես կոփածոյ քարամբք»։

6) Գայանե «...ընդարձակագոյն և պայծառագոյն... կոփածոյ քարամբք և կրով ձուլելով»։

7) Մրեն «...գեղեցկայարմար»։

8) Զվարթնոց «...բազմապայծառ յարկ. ի ներքոյ չորից սեանցն հաստահեղուսիցն»։

9) Զվարթնոց—հայրապետարանը «...հաստահեղոյս կոփածոյ քարամբք»։

10) Արուճ—պալատը «...հաստահեղոյս քարամբք և կրով պարսպեալ»։

11) Եղվարդ—եկեղեցին «...պայծառապաճոյճ»։

12) Ակոռի—եկեղեցին «...պայծառապաճոյճ»։

13) Արամոնք—եկեղեցին «...գեղեցկայարմար յարդարմամբ»։

14) Բագարան «...պճնապայծառ»։

15) Մանեայ Այրք—եկեղեցին «...ի մահարձանաց ինչ կրով ձուլածոյ»։

16) Բյուրական—եկեղեցին «...հաստահեղոյս կոփածոյ քարամբք պերճապաճոյճ տեսութեամբ և նկարակերտ յօրինուածով»։

17) Ընդհանուր ակնարկ այն եկեղեցիների մասին, որոնք կառուցել են Հայաստանի և, մանավորապես, Գեղարքունիքի ավատատերերը «...շինէին եկեղեցիս վիմարդս հաստահեղոյս ձուլեալ կրով»։

շատակված հուշարձաններին բնորոշ է մեկ ընդհանուր հատկանիշ, այն է՝ բոլորն ունեն պատվիրատուներ, որոնցից շատերը կա՛մ կաթողիկոսներ են, կա՛մ թագավորներ ու ազդեցիկ իշխաններ։

Հովհաննես Դրասխանակերտցին ճարտարապետական տվյալները հմտորեն համապատասխանեցնում է իր գրած «Պատմության» ընդհանուր միտումին։ Վերջաբանից իմանում ենք, որ աշխատությունը հասցեագրված է երկրի տերերին՝ թագավորներին, իշխաններին ու եպիսկոպոսներին, նպատակ ունենալով նրանց բերելու այն գիտակցության, թե պարտավոր են համախմբվել ու միանալ, դիմագրավելու համար Ատրպատականի Սաջյան ոստիկանների սպառնալիքին[35]։ Ամբողջ աշխատության մեջ հեղինակը շեշտը դնում է կենտրոնական ղեկավարություն ունենալու անհրաժեշտության վրա, ընդգծելով այդ խնդրում թագավորների ու կաթողիկոսների դերի կարևորությունը։ Գիտակցելով, որ մանր թագավորությունների առաջացումով վտանգվել է աշխարհիկ իշխանության միասնականությունը, նա ընդգծում է իր գործի կարևորությունը, քաջ իմանալով, որ միայն ինքն է մնացել, որ կարող է վերջ տալ ավատական երկպառակություններին։ Հեղինակի համակրանքը միշտ Բագրատունիների կողմն է, հակառակ Աշոտ Երկաթ թագավորի ու իր միջև հետզհետե աճող սառնությանը։ Հովհաննես Դրասխանակերտցու «Պատմության» ընդհանուր ուրվագծում թագավորներն ու կաթողիկոսները ներկայանում են իբրև իշխանության ու համերաշխության կրողներ։ Համերաշխություն, խաղաղություն և բարգավաճում ստեղծելու նրանց ունեցած կարողության ու հմտության գրավականը կառուցված հուշարձաններն են։ Ժամանակակից թագավորների ու իշխանների կատարած գործերը արժանի չեն գովասանքի, քանի որ նրանք մասնատել են Աշոտ Ա-ի ու Սմբատ Ա-ի թագավորությունը։

## СВЕДЕНИЯ ОБ АРХИТЕКТУРНЫХ ПАМЯТНИКАХ АРМЕНИИ В ИСТОРИИ ОВАННЕСА ДРАСХАНАКЕРТЦИ

*Г. Б. МАКСУДЯН (США)*

### Резюме

Исторический труд Ованнеса Драсханакертци содержит важные сведения о памятниках армянского зодчества периода раннего средневековья и времени правления Багратидов. В статье обследованы данные об основании, сооружении, обновлении, перестройке и разрушении 35 памятников. В некоторых случаях автор, упоминая о строительной деятельности того или иного князя, не называет самих памятников. Данные автора, католикоса и добросовестного историка, можно считать вполне достоверными, тем более что он пользовался архивом католикосского дворца в Двине, а также историческими сочинениями своих предшественников, особенно Себеоса. Сведения Ованнеса Драсханакертци помогают более тщательному изучению таких памятников как кафедральные церкви Эчмиадзина и Двина, церковь села Арамонк (Арамус). Его сообщения касаются главным образом памятников церковной архитектуры, а замки у него упоминаются мимоходом. Он дает некоторые сведения лишь о крепости Бюракан, которую сам построил.

Историк особо выделяет армянских царей (Смбат I), князей (Вардан Мамиконян, Григор Мамиконян), а также католикосов (Нерсес II, Комитас), которые были ктиторами упоминаемых сооружений. Сведения об архитектурных памятниках у Ованнеса Драсханакертци умело согласованы с общим настроением его Истории. В условиях феодальной раздробленности его симпатии всегда на стороне центральной власти— царей Армении. Упоминая о строительной деятельности царей и католикосов Армении, автор внушает мысль, что только они могут сохранить политическое единство страны.

---

35 Հովհաննես Դրասխանակերտցի, էջ 451։